



ՓԵՏՐՎԱՐԻ 23-Ը ՍՈՎԵՏԱԿԱՆ ԲԱՆԱԿԻ ԵՎ ՌԱԶՄԱԾՈՎԱՅԻՆ ՆԱՎԱՏՈՐՄԻ ՕՐՆ Է

# ՄԱՐՇԱԼԻ ԽՈՍՔԸ՝ «ՊԻՈՆԵՐ» ԱՄՍԱԳՐԻ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻՆ

Հայ լրագրողների փոքրիկ մի խումբ Մոսկվայի լրագրողների տանը հանդիպում ունեցավ Սովետական Միության մարշալ Հովհաննես Բաղրամյանի հետ: Երբ նա իմացավ, որ մեր ամսագրից նույնպես ներկայացուցիչ կա խմբում, սիրով ժամանակ տրամադրեց և գրեց հետևյալ երկտողը՝ ուղղված մեր ընթերցողներին:

Պիոները բարձր կոչում է: Պիոներական կազմակերպությունը կրում է մեծ Լենինի անունը: Մենք՝ հին սերունդի ներկայացուցիչներս, գտնում ենք, որ մեր ապագան 15—20 տարի հետո մեծ մասամբ կախված կլինի այն բանից, թե ինչպես են մեծանում ու դաստիարակվում այսօր պիոներները: Իսկ մեկուկես-երկու տասնամյակը փոքր ժամանակահատված չէ:

Մենք ուզում ենք, որպեսզի յուրաքանչյուր պիոներ կուր տեղը ժամանակ չվատնի, որպեսզի նա ամբողջությամբ նվիրվի ուսմանը, յուրացնի ավագ սերնդի ամենադրական հատկանիշները, սեփականացնի մեր պապերի և հայրերի հեղափոխական, մարտական և աշխատանքային տրադիցիաները:

Ես «Պիոներ» ամսագրի ընթերցողներին անկեղծորեն ցանկանում եմ մեծ հաջողություններ ուսման մեջ, կյանքում և պիոներական աշխատանքներում:

ՀՈՎՀԱՆՆԵՍ ԲԱՂՐԱՄՅԱՆ

# Սովետական բանակին

ԱՐՇԱԼՈՒՅՍ ՍԱՐՈՅԱՆ

Երբ դեռ չկայինք մենք աշխարհում,
Դու մահվան դեմ ես անվախ ելել
Եվ ժպիտները մեր վառվուն
Մահվան ահավոր ձեռքից խլել:

Մեր բախտի համար այսքան պայծառ
Ու բախտի համար մեր հայրերի
Մարտեր ես մղել հերոսաբար՝
Կուրծքդ դեմ տված մրրիկների:

Բարու ծարավը քո աչքերում՝
Միշտ էլ չարին ես միայն զարկել,
Մեր բախտի համար, թեժ մարտերում
Ամբողջ աշխարհի բախտն ես փրկել:

Աշխարհ ենք եկել, տեսել միայն
Կապուտակ երկինք, ծառեր ծաղկուն,
Եվ այդ ամենի համար հիմա
Երախտապարտ ենք մենք մեզ զգում:

Մեր առջև բաց է կյանքի ճամփան,
Մենք թևեր ունենք ճախրանքների,
Քաղցրիկ օրերով մեր մանկության
Պարտական ենք քո սխրանքներին:

Քեզնով ենք անհոգ երգում այսօր
Ու փառաբանում սուրդ արդար,
Գիտենք, որ դու ես ամենազոր
Պահապանը մեր երջանկության:

# Հուշարձանի մոտ

ՄԻՔ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ



Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

Լեռների մեջ փոքրիկ գյուղը
Զարդն է կանաչ սարալանջի:
Թե որ գնաս, կապույտ ծուխը
Հեռվից-հեռու քեզ կկանչի:

Փոքրիկ գյուղից հարյուր քաջեր
Պատերազմից տուն չդարձան.
Հարյուր կտրիճ հայրենասեր
Գյուղի սրտում անմահացան:

Գյուղում սգո հանդես եղավ,
Մայրերն էին կծկվել ցավից:
Լուռ կանգնած էի փոքրիկ տղան,
Չէր կտրում աչքն հուշարձանից:
Նայե՛ց, նայե՛ց տղան անձայն,
Կենդանացավ քարը աչքին,
Ու շարքերով ասես անցան
Զինվորները զրահակիր...
Բարձունքն ի վեր գրոհեցին,
Ահա դրոշն առա՛ջ տարան,
Չար թշնամուն ջախջախեցին
Ու դժվարին բարձունքն առան...
Իսկ երբ աչքը թարթեց տղան՝
Կանգնած էր լուռ մի հուշարձան:

# ՊԵՏՐՈՆ ՈՒ ՌԵՔՍԸ

**(Եղելություն)**

*ՌԱՖԱՅԵԼ ՍԱԼԻԲԵԿՅԱՆ*

Ուկրաինական մի գյուղում ապրում էր Պետրո անունով մի տղա: Նա ուներ գեղեցիկ, խելացի մի գամփռ՝ գերմանական ցեղի, շագանակագույն, չալ ճակատով, անունը՝ Ռեքս:

Երբ ֆաշիստները ներխուժեցին Պետրոյենց գյուղը, խլեցին տարան գերմանական ցեղի բոլոր գամփռները, դրանց հետ նաև՝ Ռեքսին: Շուտով նրանք սկսեցին գյուղացիներին էվակուացնել թիկունք, որպեսզի գյուղի տեղը օդանավակայան կառուցեն:

Ճանապարհին մեռավ Պետրոյի հիվանդ մայրը: Պետրոն ընկավ համակենտրոնացման ճամբար: Ճամբարը շրջափակված էր փշալարերով, որոնց մեջ բաց էր թողնված բարձր լարման հոսանք: Ճամբարի շուրջը կանգնեցրել էին չորս աշտարակ, իսկ դրանց վրա դրել գնդացիրներ և ուժեղ լուսարձակներ: Այդ աշտարակներից գիշեր ու ցերեկ հսկում էին գերմանական ժամապահները: Ճամբարի շուրջը և ներսում գնումգալիս էին գերմանացի ժամապահներն աhեղ գամփռների հետ: Ճամբարի դիարանից մինչև խանդակը՝ հինգ կիլոմետր, ձգված էր նեղգիծ երկաթուղի: Շաբաթ օրերին, գիշերը, փոքրիկ շոգեքարշը ճամբարից քաշում տանում էր մեռած կալանավորների դիակներով լցված վագոնը: Դիակները թափում էին խանդակը ու բենզինով այրում: Վագոնն ուղարկելուց առաջ հերթապահ գերմանացին արձակում էր գամփռի վզաթոկը և հրամայում. «փնտրի՛ր»: Շունը ցատկում էր վագոնի մեջ և հոտոտում մեռածներին: Հենց որ հայտնաբերում էր դիակների մեջ խցկված կենդանի բանտարկյալ, որն ուզում էր այդ կերպ փախչել ճամբարից, ապա սկսում էր հաչել: Գերմանացիները բռնվածին դուրս էին քաշում վագոնից և ,առանց այլևայլության, հենց վագոնի մոտ գնդակահարում էին ու, նորից վագոն նետելով, շոգեքարշն ուղարկում մեռելանոց:

Մի անգամ ֆաշիստները ճամբար բերեցին շների մի նոր խումբ, որոնց մեջ աչքի էր ընկնում գեղեցիկ ու ամրակազմ մի գամփռ՝ ինքը շագանակագույն, ճերմակ խալը՝ ճակատին: Պետրոն իսկույն ճանաչեց Ռեքսին:

Մի գիշեր Պետրոն հանկարծ լսեց հարևան երկու տարեց կալանավորների՝ Աշոտի ու Կոլյայի փսփսոցը: Նրանց խոսակցությունից Պետրոն իմացավ, որ քեռի Աշոտը ուզում է ինչ-որ կարևոր տեղեկություններ հաղորդել պարտիզաններին:

Առավոտյան Պետրոն մոտեցավ նրան.

— Քեռի՛ Աշոտ, ուզում եմ ձեզ օգնել: Ես ինքս կարող եմ պարտիզաններին տեղեկություն հասցնել:

Աշոտը լայն ու ծանր ափը դրեց տղայի գլխին և, աչքերը կկոցելով, ուշադիր նայեց նրան ու կամացուկ ասաց.

— Իսկ դու այդ գործն ինչպե՞ս գլուխ կբերես:

— Գիշերը, երբ իմ շունը հերթապահելիս լինի, ես վագոն կխցկվեմ մեռելների հետ ու...

— Քո՞ շունը,— զարմացավ քեռի Աշոտը:

— Այո՛: Գերմանացիներն անցյալ տարի տարան նրան: Իսկ վերջերս ուրիշ շների հետ բերել են այստեղ:

— Ա՛յ, թե ի՛նչ,— ծոր տվեց քեռի Աշոտը և սկըսեց մտածել:

Պետրոն, շունչը պահած, սպասում էր:

— Դե որ այդպես է,— հանդարտ, մտածկոտ արտասանեց քեռի Աշոտը,— արժե այդ մասին խորհել:

Ընդհատակյա կուսակցականների ղեկավար Աշոտ Արամյանը և նրա տեղակալ Նիկոլայ Կովալյովը գիշերը խորհրդակցեցին ու, վերջապես, եկան այն եզրակացության, որ Պետրոյի առաջարկած պլանը ամենահուսալին է:

Ռեքսի հերթապահության նախօրյակին Արամյանը Պետրոյին հանձնեց հրացանի երեք փամփուշտ և ասաց.

— Այս պարկուճներում շատ կարևոր տեղեկություններ կան: Դրանք կհանձնես պարտիզաններին: Նրանք անտառում են...

Ապա, տղային իրեն մոտեցնելով, բեղերով հպվեց, համբուրեց նրա գլուխը:

Մթնած գիշեր: Աշնանային փոթորկի ամպերը դանդաղ լողում էին երկնքով: Լուսարձակների ծկոր խուրձերն աշտարակներից անընդհատ պրպտում էին գիշերային խավարը, ճամբարի շուրջը:

Պետրոն, մթությունից օգտվելով, մոտեցավ ու իրեն գցեց վագոնը, փայտացած մարմինների վրայով մագլցելով՝ գնաց կծկվեց մի անկյունում: Շոշափեց երեք պարկուճները, որ կարված էին ճամբարային կոլավոր շալվարի գոտկատեղում: Քարացավ, լռություն դարձավ: Լսվեց մոտեցող քայլերի ձայնը:

— Փնտրի՛ր,— կանչեց հերթապահ գերմանացին:

Պետրոն լսում էր, թե ինչպես է շունը հոտոտում հանգուցյալներին: Տղան ցավելու չափ սեղմել էր ատամները. մի՞թե Ռեքսը կմատնի իրեն: Ահա, ահա, մոտենում է. լսվում է շան շնչառությունը: Ա՛յ, արդեն բոլորովին մոտիկ է...

— Ռե՛քս,— ցածրաձայն կանչեց Պետրոն և այդ իսկ վայրկյանին այտին կզգաց շան խոնավ, սառը քթի հպումն ու տաք շնչառությունը:— Ռե՛քս,— շշնջաց նա գամփռի ականջին, դողացող ձեռքով շոյելով նրա գըլուխը,— չհայտնես, ախպե՞րս:

Ռեքսը ուրախ ու ցածրաձայն կաղկանձեց, լիզեց Պետրոյի քիթը ու ցած թռավ վագոնից։

Վագոնի դուռը աղմուկով փակվեց։

— Մեկնի՛ր,— ձայնեց հերթապահը մեքենավարին, և շոգեքարշը, փնչալով, դանդաղ շարժվեց տեղից։

Պետրոն սողաց դեպի դուռը։ Ականջը հպեց դռանը։ Լռում է։ Երբ շոգեքարշը մի երեք հարյուր մետր հեռացավ ճամբարից, Պետրոն հեշտությամբ ետ քաշեց դուռը և, գլուխը մտցնելով դռան արանքը, աջ նայեց, ձախ նայեց, բայց լուսարձակներով կտրատվող խավարից բացի, ուրիշ ոչինչ չտեսավ։ Շոգեքարշն սկսեց արագացնել ընթացքը։ «Ժամանակն է»,—որոշեց Պետրոն և, ճիգով դուրս եկավ դռան արանքից, թափով ետ մղվեց վագոնից, վար ցատկեց ու գլորվեց գնաց հողաթմբի չոր մացառների վրայով։ Մի քանի րոպե անշարժ պառկած՝ ականջ դրեց։ Փոքրիկ շոգեքարշի փնչփնչոցը քանի գնում հեռանում էր։ Պետրոն կգուշորեն բարձրացրեց գլուխն ու շուրջը նայեց։ Սողաց դեպի գետը։ Հանկարծ լսեց ցածրաձայն կաղկանձյուն։ Շուն է։ Մի՞թե գերմանացիները իր հետևից շուն են բաց թողել։ Պետրոն արագ ոտքի ելավ, ծոցից հանեց գրչահատ դանակը, որ քեռի Աշոտն էր նվիրել, և բացեց նեղ ու սուր բերանը։ Այդ պահին լուսարձակի լույսի տակ պարզորոշ երևաց դեպի Պետրոն վազող վիթխարի գամփռը՝ սպիտակ խալը ճակատին։

— Ռե՛քս,— ուրախ բացականչեց Պետրոն և գրկեց շան ամուր վիզը։ Ռեքսը կաղկանձում ու լիզում էր տղայի այտը։

— Փախչե՛նք,— ձայն տվեց Պետրոն, լուսարձակի շողերից աչքերը կկոցելով։

Տղան ու շունը վազեցին դեպի գետը։

Գերմանական ժամապահները սկզբում կարծեցին, թե իրենց գամփռը հետապնդում է փոքրիկ փախստականին, բայց երբ նկատեցին, որ շունը չի էլ փորձում բռնել տղային, տագնապ բարձրացրին։

Շուտով ճամբարի դարբասներից դուրս վազեցին երեք ավտոմատավորներ, հետները՝ երկու շուն, ու սլացան գետի կողմը։ Լուսարձակների երկու շլացուցիչ փնջեր խաչվեցին փախստականի վրա։ Առջևից փայլփլեց գետի նեղ շերտը։ Չդանդաղեցնելով վազքը, Պետրոն մխրճվեց սառը ջրի մեջ և, անցնելով մի տասը քայլ, սկսեց լողալ։ Հասնելով մյուս ափը, ետ նայեց։ Գլուխը վեր ցցած՝ լողալով գալիս էր Ռեքսը։ Հակառակ ափից նրան էր հասնում հետապնդող շների հաչոցը։ Ռեքսը ափ թռավ, թափահարեց իրեն, և նրանք՝ տղան ու շունը, նորից շնչակտուր վազ տվին, այժմ արդեն՝ դեպի անտառ։ Մինչև անտառի եզրը մնաց մի երկու հարյուր մետր։ Պետրոն ետ նայեց ու փշաքաղվեց։ Ամբողջ թափով դեպի նրա կողմն էին սլանում երկու գամփռ. գերմանացիները կգալով, որ տղան ավելի լավ է վազում, քան իրենք, վզկապերից արձակել էին շներին։

Գետի մակերեսին, որ ողողված էր լուսնի պաղ շողերով, աղոտ փայլփլում էին գերմանական երեք սաղավարտ և ավտոմատի երեք փող։

Ռեքսը թողեց Պետրոյին ու ետ սլացավ։ Պետրոն տեսավ, թե Ռեքսն ինչպես խփեց գամփռներից մեկի լայն կրծքին և, թույլ չտալով ուշքի գալ, ատամները խրեց նրա կոկորդը։ Մյուս գամփռը բռնեց Ռեքսի վզից։ Ռեքսը կտրուկ շուռ եկավ ու երկրորդ շանը սեղմեց գետնին։ Սա Ռեքսի ծանրության տակ շնչա-

*Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ*

# ԼԵՌՆԱԳԱԳԱԹՆԵՐ

*ՎԼԱԴԻՄԻՐ ԱՎԵՏԻՍՅԱՆ*

Ձյունաթո՛ւյր, անհա՜ս լեռնագագաթներ,
Ոսկե շողերի գահե՛ր հաղթական,
Ձեզ հետ կայծակն է բախվել բյուր անգամ,
Բախվել է, պարտվել։
Լեռնագագաթնե՛ր, որքա՜ն հպարտ եք։
Այնպե՜ս կուզեի՝ ձեր մաքուր ձյունից,
Ծնվեին մի օր բյուր աղավնիներ,
Եվ խաղաղության լուրը տանեին
Ծովերից ծովեր, լեռներից-լեռներ։

# ՓԱԹԻԼՆԵՐ

*ՍԱՄՎԵԼ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ*

Թափվո՛ղ փաթիլներ, դուք ինձ մի՛ հպվեք,
Թե չէ կհալվեք, կհալվեք իսկույն,
Տաք եմ ես, տաք եմ ու սիրտս տաք է,
Թափվո՛ղ փաթիլներ, դուք ինձ մի՛ հպվեք։

Թափվո՛ղ փաթիլներ, դուք ինձ մի՛ հպվեք,
Զգո՜ւյշ, շա՜տ զգույշ դուք իջեք հողին,
Որ ապրեք գոնե մի քանի վայրկյան...
Մի քանի վայրկյան նայեք աշխարհին...

հեղձ եղած, բերանը բացել ու թպրտում էր: Հենց նույն վայրկյանին Ռեքսի հուժկու ծնոտները փակվեցին նրա կոկորդին:

— Սա կատաղե՛լ է,— ձայն տվեց գերմանացիներից մեկը, ափ վայելով:

Ավտոմատի երկար կրակահերթ, և Ռեքսը, թողնելով հոգևարքի մեջ ընկած շներին, կաղալով փախավ դեպի Պետրոն: Միանգամից որոտացին մի քանի կրակահերթեր: Ռեքսն ընկավ, բայց վերջին ուժերը հավաքելով, դարձյալ բարձրացավ և, գլուխը կախ, դանդաղ, օրորվելով, գնաց դեպի գերմանացիները, որոնք գալիս էին Պետրոյի կողմը:

Անտառից կրակեցին: Ֆաշիստներից մեկը, ձեռքերը թուլացած, ընկավ: Մյուս երկուսը պպզեցին և, շուռ գալով, կուչեկուչ փախան դեպի գետը:

Պետրոն պոկվեց տեղից: Մոտենալով կողքին ընկած Ռեքսին, ծունկի եկավ և բարձրացրեց շան գլուխը: Ռեքսը, խռխռալով ծանր շնչում էր:

— Ռե՛քս, Ռեքսի՛կ, մի՜ մեռնի,— Պետրոն շան գլուխը սեղմեց այտին ու փղձկաց:

Ռեքսը ուժասպառ լիզում էր տղայի այտը ու ծանր հևում: Շան կիսաբաց աչքերից հոսեցին արցունքի երկու խոշոր կաթիլներ:

Ինչ-որ մեկի ձեռքն իջավ Պետրոյի ուսին: Նա գլուխը բարձրացրեց և արցունքի միջից, ասես մշուշում, տեսավ բարձրահասակ, մորուքավոր մի մարդու՝ ավտոմատը կրծքին: Նրա ետևում անշարժ ու լուռ կանգնած էին մի քանի հրացանավորներ:

— Ապրե՛ս, որդի՛ս,— խուլ ու բամբ ձայնով արտասանեց մորուքավորը:— Սա քո՞ շունն է:

— Այո՛,— ցածրաձայն ասաց Պետրոն՝ բարձրանալով ու թևքով սրբելով արցունքները:

— Լավ շուն է, հավատարիմ: Տղե՛րք,— դարձավ մորուքավորը մյուսներին,— շանն իսկո՛ւյն հասցրեք բուժկետ:

Մի քանիսը մոտ վազեցին շանը: Նրանցից մեկը հանեց իր շինելը: Ծանր վիրավոր շանը պարտիզանները կգուշորեն դրին շինելի վրա, բարձրացրին ու արագ քայլերով գնացին անտառի կողմը:

Մորուքավորը թփթփացրեց Պետրոյի ուսին.

— Մի՛ վշտանա, տղա՛ս: Ամեն ինչ լավ կլինի:

— Քեռի՛,— դողացող ձայնով ասաց Պետրոն,— նա չի՞ մեռնի:

— Չի՜ մեռնի, սիրելի՛ս, չի՜ մեռնի: Մեր բժիշկ Զախար Տարասովիչը չի թողնի, որ մեռնի: Նա մեր կախարդն է,— և մորուքավորը կրծքին սեղմեց տղայի լղարիկ, դողահար մարմինը:



## ՁՄԵՌԸ ԼՌՈՒՄ

*ԱԼԵՔ ԽԱՉՈՒՆՑ*

Շուրջս անտառ է, շուրջս՝ ձմեռ,
Ու փաթիլ-փաթիլ ձյուն է գալիս,
Բայց խաղաղ նիրհող անտառում դեռ
Աղբյուրն է երգում արծաթալիք:
Երգում է ինքը իր բախտից գոհ
Եվ ձյուների մեջ թեթև սահում,
Փոքրիկ աղբյուրն իր զնգուն երգով
Մի ողջ անտառ է արթուն պահում:
Չկան երգերը մանուկների,
Չկա ճամբարում ոչ մի վրան,
Փոքրիկ աղբյուրի արծաթ ջրից
Նապաստակներն են խմում միայն:
Ծեր փայտահատն է կրակ վառում,
Ծուխն է երկարում խոր ձորերով,
Ու նրա շուրջը անտառը լուռ
Քնած է գարնան երազներով:
Լսում եմ անգամ շունչը ծառի,
Եվ լռությունը դառնում է երգ.
Ա՛խ, խաղաղությունն այս անտառի
Տարածվե՜ր ամբողջ աշխարհով մեկ:




# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՎՐԱՍՏԱՆԸ 50 ՏԱՐԵԿԱՆ Է

50 տարի առաջ Վրաստանը սովետական դարձավ: Մի նոր ու պայծառ էջ բացվեց վրաց ժողովրդի պատմության մեջ, պատմություն, որ ժողովրդի շինարար աշխատանքի ու հերոսական պայքարի դարավոր տարեգրությունն է:

Տարբեր ժամանակներում, հաջորդելով մեկը մյուսին, օտար նվաճողները ասպատակում էին վրացական հողը, թալանում ու սպանում մարդկանց, ավերում երկիրը: Ժողովուրդն ըմբոստանում էր, դուրս քշում նվաճողներին և խաղաղության կարճատև տարիներին վբաղվում շինարար աշխատանքով: Կառուցվում էին հզոր ամրոցներ ու հոյակապ տաճարներ, ծաղկում էին գիտությունը, արվեստներն ու գրականությունը:

Այսպես դարեր շարունակ: Կամավոր միանալով Ռուսաստանին՝ վրաց ժողովուրդը ազատվեց ֆիզիկական բնաջնջման վտանգից, բայց ցարիզմի պայմաններում Վրաստանը հետամնաց գաղութ էր, ենթակա անգութ շահագործման:

Իր փրկությունը նա գտավ 1921 թ., որը վրաց ժողովրդին բերեց երազած ազատությունը: Կարմիր բանակի օգնությամբ փետրվարին Վրաստանում սովետական կարգեր հաստատվեցին:

50 տարում անճանաչելիորեն փոխվել է Վրաստանը: Ցարական հետամնաց գաղութից նա դարձել է բարձր կարգացած արդյունաբերության ու գյուղատնտեսության երկիր: Այսօր նա 67 անգամ ավելի շատ արդյունաբերական արտադրանք է տալիս, ածխի հանույթը ավելացել է 34, իսկ էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 335 անգամ: Վրաստանը այսօր տալիս է Սովետական Միության թեյի 98 տոկոսը:

Սովետական իշխանության տարիներին վրաց և հայ ժողովուրդների բարեկամությունը ավելի է ամրապնդվել: Մշակութային, գիտական ու տնտեսական կապերը օրեցօր ավելի են այն խորացնում:

Վրաստանի ինքնատիպ գրականությունն ու արվեստները այսօր նոր թափով են շարունակվում: Աննախընթաց կարգացման է հասել գիտությունը: Հանրակրթական դպրոցների թիվը 50 տարում ավելացել է 2,5 անգամ, երկրում այսօր գործում են 18 բարձրագույն ուսումնական հաստատություններ, գիտությունների ակադեմիա:

Օր-օրի գեղեցկանում է Վրաստանի մայրաքաղաք Թբիլիսին, որը վերջերս տոնեց իր 1500-ամյակը: Բազմահարկ շենքերը, կանաչ պուրակները, Քուռի վրա գցված գեղեցիկ կամուրջները հիանալի ներդաշնակում են հնագույն հուշարձանների հետ: Վրացիները սիրով Թբիլիսին «դեդակալակի» են անվանում, այսինքն՝ մայր քաղաք:

Աշխատանքային հերոսության համար Վրաստանը երկու անգամ պարգևատրվել է Լենինի շքանշանով:

# ԱՌԱՎՈՏ

Առավոտ է, ցողաթաթախ առավոտ,
Սար ու ձորեր խորունկ քնից արթնացան,
Իսկ դաշտերում լայնարձակ ու արևոտ
Մարդիկ ուրախ կատարում են վար ու ցան:

Չորս բոլորը ծաղկի բույր է տարածվում,
Սարի լանջին գառնուկներն են արածում,
Հովիվ տղան նստած ծառի շվաքում,
Անո՜ւշ-անո՜ւշ իր սրինգն է նվագում:

*ԻԼՅԱ ԳԱԳԱԼԱՇՎԻԼԻ*

*(Վրաց. ՍՍՀ, Քութայիսիի պիոներների պալատի գրական խմբակի անդամ)*

*Թարգմ. Ս. ՄԿՐՏՉՅԱՆԻ*



Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

# ԽԱՂԱՂ ԵՐԿԻՆՔ

*ՍԻՄՈՆ ՇԱՄՓՐԻԱՆԻ*

Գարնան սիրուն թռչնակի պես
Ծլվլում է մանկիկն ահա...
Լինի արթուն, լինի քնած՝
Իր մայրիկին ժպտում է նա:

՝ սկ մայրիկը հույսը սրտում,
Մոր ժպիտով իր երջանիկ,
Օրորում է ծաղիկ որդուն
Ու երգում է. «Նանի՜կ, նանի՜կ...»

Եվ մայրիկի օրհնանքն առած՝
Անուշ բալիկն է մեծանում:
Եվ աշխարհը նրա առաջ
Իր հրաշքներն է բաց անում:

Նա արեգակ է նկարում,
Նկարում է ծաղիկ ու ծառ,
Եվ արևն է նրան նայում
Իր մայրական աչքով պայծառ:

Հոգով շիտակ նա կլինի
Ու կճախրի երկնում ազատ
Եվ կսիրի իր հայրենի
Գարնան դաշտերն արևազարդ:

Մտերիմներ նա կունենա,
Նա կունենա եղբայր ու քույր՝
Հայրենիքում իր անսահման,
Երկնքի տակ պարզ ու մաքուր:

Կմեծանա մանկիկն անվիշտ,
Կերգի անհոգ ու զվարթուն,
Թե որ լինի երկինքը միշտ,
Այսպես խաղաղ, այսպես ժպտուն:

Թող կանաչի կուրծքը հողի,
Թող ճաճանչի արևն անմար,
Մայրիկն անուշ օրոր ասի
Իր սիրասուն որդու համար:

*Թարգմ. Ն. ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ*

# ՀԱՏՈՒՑՈՒՄ

ԳԵՈՐԳԻ ԻՈՋԱԿՄԱՁԵ



եսօր է: Շոգ: Փողոցներում դատարկություն է:

Մարդիկ քաշվել են իրենց տները ու սպասում են երեկոյան հովին: Միայն Օտիան է, որ չի վախենում շոգից: Երրորդ օրն է նա զբոսնում է շիկացած փողոցում: Հատկապես ընտրում է այդ կիզիչ պահը: Ետ-առաջ, ետ-առաջ, կասկածելի մի հայացք նկատելիս՝ անհոգ տեսքով սկսում է սուլել և անմիջապես մտնում է խանութ, կանգնում է ցուցափեղկի մոտ, ուր ցուցադրված են արևի ակնոցներ: Բավական է, որ գործակատարը կասկածանքով նայի, անմիջապես հարց է տալիս.

— Սա արևի ակնո՞ց է:

Գործակատարը ծուռ-ծուռ նայում է նրան.

— Այո՛: Հետո ի՞նչ:

— Տվեք նայեմ:

— Նայեցիր, հետո՞:

— Չեք տալիս, պետք էլ չի: Մյուս խանութից կգնեմ:

Գործակատարը հաստատ համոզված է, որ տղայի գրպանում կոպեկ չկա: Նա «չափազանց սխալվում է» և որպես ապացույց, որ նա «չափազանց սխալվում է», Օտիան, կարծես հենց այնպես, պատահաբար գրպանից հանում է երեք ռուբլիանոցը, հարթեցնում, ուշադիր զննում, նորից դնում գրպանը, և, գրպանում ինչ-որ բան որոնելով, դանդաղորեն հեռանում սև ակնոցների ցուցափեղկից: Ճիշտ է, Օտիայի մոտ երբեք այդքան փող չի եղել, և որքա՜ն է նա պատրաստվել որևէ բան գնել այդ երեք ռուբլով... Բայց սև ակնոց, եթե նույնիսկ նվիրեն, գուցե չվերցնի: Ինչի՞ն էր պետք:

Օտիան դուրս է գալիս խանութից և գնում է փողոցի երկայնքով:

Գուցե կհարցնեք, թե ինչո՞ւ է Օտիան այդ կիզիչ շոգին թափառում այս փողոցում: Օտիան ուզում է դաս տալ մի անպատկառ աղջկա: Նրան, որն ապրում է, ա՜յ, դիմացի երկհարկանի շենքում: Նա պետք է վրեժ լուծի այդ աղջկանից: Կարող է պատահել, որ մի երկու հատ հասցնի նրան, հետո՞ ինչ, որ աղջիկ է:

Եթե մեղավոր ես, աղջիկ թե տղա, պատասխան պիտի տաս: Օտիան հասցրած վիրավորանքը ոչ ոքի չի ների, չի հանդուրժի անարդարություն և վե՛րջ:

Իսկ թե ինչ հանցանք է գործել աղջիկը, որի անունն Օտիան չգիտե, հիմա կիմանաք...

Մի երեք օր առաջ Օտիան անցնում էր այս փողոցով: Հենց այն ժամանակ, երբ նա հասել էր այդ աղջկա շենքին, հանկարծ մի շրխկոց լսվեց և աղմուկով ցած թափվեց փշրված ապակին: Օտիան վախեցած կանգ առավ, նայեց ջարդված ապակուն, չորս կողմը: Երևի ինչ-որ մեկը քարով խփել էր լուսամուտին, բայց ո՞վ:

Շենքի դուռն արագ բացվեց, և իրար ետևից դուրս թափվեցին տղամարդ, կին և մի աղջիկ: Աղջիկը մատով ցույց տվեց դեպի Օտիան.

— Այդ նա՛ էր... Նա՛ էր...

Օտիան ի՞նչ իմանար, թե պիտի ընկնի այդ ամոթալի վիճակի մեջ: Թե չէ այնպես կծլկեր այդ փողոցից ու էլ երբեք չէր երևա այդ անիծված փողոցում: Բայց այդ բոլորը այնքան հանկարծակի կատարվեց, որ նա շփոթվեց, տեղից չշարժվեց:

Իսկ աղջիկը շարունակում էր.

— Նա՛ էր, Նիկո՛ քեռի, նա՛ էր...

Այդ ժամանակ հաստափոր Նիկո քեռին, կատաղությունից աչքերը չռած, բռնեց Օտիա Շևարդնաձեի ականջից: Բռնեց և շատ ուժեղ ոլորեց, քիչ էր մնում պոկեր, հետո շրջեց տղային ու ապտակեց:

— Էլի կջարդե՞ս, կջարդե՞ս, ա՜յ դու լակոտի մեկը...

Այդպես վերջացավ այդ ամոթալի պատմությունը: Բայց ո՛չ, մի բան էլ եղավ: Գուցե շատ փոքր բան, սակայն Օտիային դա ավելի վիրավորանք պատճառեց. հենց որ նրան ապտակեցին, նա փոքրի նման լաց եղավ, ասելով.



Նկ. ԷԴՎԱՐԴ ԽԱՐԱԶՅԱՆԻ

— Ես չեմ կոտրել: Ես չեմ...

Եվ հետո, երբ տղամարդը գոռում էր. «Սրա՛ն տեսեք, դեռ հրաժարվում է...» Նա դուրս պրծավ, և գլուխը կորցրած փախավ:

Մի քիչ անց, երբ Օտիան մտածելու հնարավորություն ունեցավ, գտավ, որ ավելի լավ կլիներ չտզալ և այդքան շուտ չփախչել: Բայց այն պահին, այդ անարդարությունից ապշած, վախեցած, այրվող ականջներով, նա ոչ մի բան մտածել չկարողացավ: Չմտածեց և կատարեց մի բան, որ բոլորովին չէր սազում իրեն, տղամարդուն: Ահա և նա վճռեց վրեժ լուծել անպատկառ աղջկանից, դրանով մի քիչ թեթևացնել ստացած վիրավորանքը: Սարսափելի շոգին, երբ արևը այրում էր ամբողջ ուժով, նա պետք է հանկարծակիի բերեր «թշնամուն», ինչպես հարկն է դաս տար ու փախչեր: Այդ ժամանակ փողոցներում մարդ չի լինում և Օտիային բռնող չի լինի:

Բայց դե, աղջիկը չի հայտնվում: Ահա երրորդ օրն է նա դարանակալում է:

Այսօր մի քանի անգամ անցել է նրանց տան մոտով: Վերջապես նա կանգ առավ նրանց մուտքի մոտ, նայեց վարագուրված պատուհանին: Ներսում կարծես մարդկային շունչ չկար: Մուտքի մոտ տրնկված Օտիան վրիժառու այրվող հայացքը չէր կտրում նրանց տնից:

Հայացքով քար որոնեց:

«Խփեմ ու ջարդեմ... փշրեմ բոլոր ապակիները...»—անցավ նրա մտքով: Կռացավ, որ քար վերցնի, բայց և իսկույն հրաժարվեց այդ մտքից: Ինչ խոսք, կարելի էր կոտրել ապակիները և անպատիժ թաքնվել, սակայն այն ժամանակ կրած պատիժը տեղին կլիներ: Իսկ Օտիայի ուզածը այդ չէր:

Նա գերադասում էր անարդարության ծանրությունը կրել, մինչև որ իր ձեռքով աղջկա հետ հաշիվ տեսներ: Բայց աղջիկը չկար ու չկար: Գուցե նա այստեղ հյո՞ւր էր: Չէ՞ որ «քեռի Նիկո» ասաց: Ուրիշ բան, եթե «հայրիկ» անվաներ:

Վա՜խ, իսկ եթե իսկապես նա հյուր էր ու գնացե՞լ էր...

Եվ հանկարծ...

Դուռը բացվեց ու... Օտիան տեսավ իր «ոխերիմ թշնամուն»:

Սիրտն սկսեց արագ-արագ բաբախել: Դեմքը կարմրեց: Հուզմունքից և սրտի արագ զարկերից ականջները կարծես խլացան: Նա նայեց շուրջը: Փողոցում ոչ ոք չկար: Վրա հասավ ծանր պահը:

Իսկ աղջիկը բոլորովին անվախ դուրս եկավ փողոց, մոտեցավ Օտիային ու հարցրեց.

— Դու այստեղ ի՞նչ ես անում: Մարդու ե՞ս սպասում:

Օտիան մի պահ շփոթվեց, և մինչ կմտածեր պատասխանը, աղջիկն ասաց.



— Խնդրում եմ, մի րոպեով արի ինձ հետ:

Ու բռնեց նրա ձեռքը:

— Գնանք... դե, գնանք...

Օտիան քարացել էր:

— Վա՜յ, մայրի՜կ ջան, ի՞նչ անեմ... Դե գնանք էլի՜...

— Ո՞ւր,— հազիվ կարողացավ արտասանել Օտիան:

— Տուն: Ա՛յ այստեղ...— Նա ձեռքը մեկնեց դեպի դուռը և ամբողջ ուժով քաշեց նրան:

Օտիան դանդաղորեն շարժվեց տեղից:

Տեսնելով, որ տղան գալիս է, աղջիկն ուրախացավ և առաջ վազեց:

Սկզբում նրանք մտան մի սենյակը, հետո՝ մյուսը:

Ավելի շուտ, դա սրահ էր և ոչ սենյակ: Պատի տակ դրված էր գրքերով լի մեծ գրապահարան և դրա կողքին՝ ամուր փակված, մուգ դաշնամուր, հետո՝ բազմոցը: Հետո՝ բազկաթոռներ և աստված գիտե, թե էլ ինչ: Սենյակի կենտրոնում դրված էր սեղանը: Ինչե՜ր ասես, որ այնտեղ չկար: Ինչ-որ տարօրինակ մի ժամացույց, հսկայական ալբոմ:

Աղջիկը մոտեցավ սեղանին, վերցրեց ժամացույցը և մեկնեց Օտիային:

— Նայի՜ր...

— Ի՞նչ:

— Հոնի՜ր:

Օտիան վերցրեց ժամացույցը: Նա այնպես էր կաշկանդված, որ կարծես վախենում էր, թե ժամացույցը կկծեր:

— Չի աշխատում,— ասաց աղջիկն ու խոր հոգոց քաշեց:

— Ես ի՞նչ մեղավոր եմ, որ չի աշխատում,— զարմացավ տղան:

— Խնդրում եմ, սարքի՛ր, խնդրում եմ:

— Սարքե՞մ:

— Այո՛, սարքի՛ր, քանի դեռ քեռակինը չի եկել: Թե չէ ինձ կսպանի: Ձեռքիցս ընկավ և կանգնեց: Կսարքես, չէ՞:

Հասկանալի է, աղջիկը համոզված էր, որ ժամացույց սարքելը տղայի համար վայրկյանի բան էր, միայն թե չծուլանար: Օտիան մի պահ մտածեց, նայեց՝ գուցե իսկապես կարողանա: Համենայն դեպս կփորձի: Շատ դժվար էր խոստովանել անզորությունը, մանավանդ հիմա, երբ այդքան հավատում են իր հմտությանը:

# ԴԱՍ ՏԱԼ, ԱՅՈ՛, ՊԵՏՔ ԷՐ



ԱԶԱՏ ՇԱՀԻՆՅԱՆ

*Աղջիկը վգուշությամբ ձեռքը մոտեցրեց քնած բրոջը:*

*Քույրը վեր թռավ.*

*— Բա քնած մարդուն այդպե՞ս կարթնացնեն...*

*— Ես կամաց հրեցի, ա՛յ այսպես...— նույնպիսի վգուշությամբ կրկնեց աղջիկը:*

*— Ժամը քանի՞սն է,— ոտքի թռավ Մարինեն,— վա՜յ, ուշացել եմ...*

*— Ի՞նչ անեմ, երկու անգամ ձայն տվի, չարթնացար:*

*— Այն ի՞նչ է բլդբլդում խոհանոցում:*

*— Թեյն է եռում:*

*— Եռում է՝ անջատի՛ր:*

*— Նոր սկսեց եռալ:*

*— Այս ի՞նչ է: Ավելն ինչո՞ւ ես սենյակում թողել:*

*— Հատակը մաքրեցի...*

*— Հատակը մաքրել ես ու ավելը թողել սենյակո՞ւմ:*

*— Կարտոֆիլ տապակելով ընկա...*

*— Ի-ի՞նչ...Ուրեմն հատակը մաքրելուց հետո կարտոֆի՞լ ես տապակել, առանց լվացվելո՞ւ...*

*— Ի՞նչ ես ասում, Մարինե՛, ես օճառով...*

*Մարինեն փնթփնթալով լվացվեց, հագնվեց, կերավ քրոջ տապակած կարտոֆիլը ու, թեև ժամանակ չուներ, բայց մի բաժակ էլ թեյ խմեց և գլխապատառ դուրս թռավ:*

*Մոտենալով տրամվայի կանգառին, սկսեց անհանգիստ ետ ու առաջ քայլել:*

*— Ներողություն, քեռի՛, ժամը քանի՞սն է,— մոտեցավ մեկին:*

*Մարդը ամենայն սիրով ասաց ժամը: Մի րոպե անց աղջիկը մոտեցավ երկրորդին.*

*— Ներողություն, մորաքո՛ւյր, ժամը քանի՞սն է:*

*— Տասն անց երեսուն,— նույնքան սիրով ասաց կինը:*

*Քիչ անց Մարինեն անհանգստությունից գլուխը կորցրած՝ մոտեցավ երրորդին.*

*— Պապի՛, չէի՞ք ասի, ժամը քանի՞սն է:*

*Ծերունին ձեռքը տարավ ժիլետի գրպանը և այնտեղից մի մեծ ժամացույց դուրս քաշելով, առանց շտապելու ասաց.*

— Մի որևէ բան բեր,— ասաց նա աղջկան, այնպիսի եղանակով, որ նշանակում էր. թեև շատ եմ ծուլանում, բայց քեզանից ազատվել հնարավոր չէ, ինչ արած:

. — Ի՞նչ բերեմ:

— Որևէ գործիք, էլ ի՞նչ...

Աղջիկը վազեց ու անմիջապես բերեց մուրճ, փոքր կացին, սղոց, տարբեր չափի մեխեր: Օտիան, դրանք տեսնելով, գլուխն օրորեց. խելագա՞ր է, ի՞նչ է, բայց ոչինչ չասաց: Նա հիշեց, որ իր գրպանում մի փոքրիկ դանակ կա: Հանեց, բաց արեց և սկսեց ժամացույցը քանդել:

Աղջիկը զարմացած աչքերով նայում էր տղային և պտտվում էր նրա շուրջը, նստում էր դիմացը, մի խոսքով, չգիտեր, թե ինչով օգներ այդ բարի տղային: Բավական էր տղան գլուխը բարձրացներ, որ աղջիկը անմիջապես նայեր նրա աչքերին, պատրաստ անխոս կատարելու նրա բոլոր պահանջները: Բայց Օտիան ոչինչ չէր նկատում և ոչինչ չէր ասում:

Շուտով նրա շուրջը ծածկվեց ժամացույցի մասերով:

— Քանդեցի՛,— վերջապես ասաց Օտիան և հանգիստ շունչ քաշեց: Աղջիկն էլ թեթևացած շունչ քաշեց: Ի նշան շնորհակալության նան ժպտաց:

— Իսկ հիմա հավաքի՛ր,— հիշեցրեց նա տղային:

— Կհավաքեմ,— խոստացավ տղան ու շարունակեց աշխատել:

Դժվար է ասել, թե ինչ էր նա մտածում, ինչի վրա էր հույս դնում, մի՞թե հրաշքի: Թերևս: Սակայն հրաշք չկատարվեց, և սպասվածի պես, ժամացույցի մասերից շատ բան մնաց դուրսը: Օտիան դեսուդեն էր շրջում հավաքած ժամացույցը, հետո վեր կացավ, ձգվեց: Աղջիկը աչքը չէր կտրում դուրս մնացած մասերից. սկսեց կասկածել:

— Աշխատո՞ւմ է,— վախով հարցրեց նա:

Օտիան ժամացույցը մոտեցրեց ականջին: Հետո նայեց սլաքներին:

— Ոնց որ թե՝ չէ...

Այդ ժամանակ աղջիկը ժամացույցը մոտեցրեց իր ականջին, նայեց սլաքներին:

— Ի՞նչ անեմ,— աղջկա աչքերը սարսափ և հուսահատություն էին արտահայտում:

— Չգիտեմ... Ուզո՞ւմ ես, տանենք ժամագործի մոտ: Դու կարծում ես այնտեղ հեշտությամբ կհավաքվի՞: Դա ո՛չ արդուկ է և ո՛չ էլ էլեկտրական սալիկ: Ժամացույց չլիներ, ես անմիջապես կսարքեի:

— Արդուկ էլ կա,— բացականչեց աղջիկն ու նրա դեմքը մի ակնթարթ պայծառացավ,— ես եմ փչացրել:

*— Տասն անց երեսուներեք րոպե, աղջի՛կս։*

*— Վա՜յ, մամա՛,— բացականչեց Մարինեն։— Ի՞նչ անեմ, հը՞... առանց ինձ նրանք կորած են...*

*— Ի՞նչ է պատահել, աղջի՛կս,— հարցրեց ծերունին,— ինչո՞ւ ես էդպես իրար անցել։*



*— Ուշանում եմ, պապի՛կ, վաղն առավոտյան ջոկատի պատի թերթը պետք է փակցված լինի։ Ես եմ արտագրողը, լավ ձեռագիր ունեցող ուրիշը չկա, որ... կա, բայց ամբողջ թերթը մի ձեռագրով լավ չի։*

*Տրամվայը եկավ։ Աղջիկը առաջին հերթին կողքին կանգնած ծերունուն հրելով, գլխապատառ իրեն գցեց վագոն։*



*Մարինեն մոտեցավ դպրոցի դռանը ու եռանդով սկսեց թակել։*

*Դռների ետևում հայտնվեց պահակը։*

*— Բա՛ց արեք, շո՛ւտ, շո՛ւտ...— բղավեց Մարինեն։*

*— Ի՞նչ ես ձենդ գլուխդ գցել...*

*Դուռը բացվեց։ Գնդակի արագությամբ աղջիկը վեր սլացավ աստիճաններով, մոտեցավ պիոներական սենյակին։ Ներսում լռություն էր տիրում։ «Ես այդպես էլ գիտեի, չեն եկել...»— մտածեց Մարինեն ու դուռը թափով շրխկացրեց պատին։ Բոլորն էլ եկել էին... Ամեն մեկը իր գործով էր զբաղված։ Նրանք մի պահ ընդհատեցին աշխատանքը և նորից անցան իրենց գործին։ Իսկ Մարինեն վերարկուն ու վզնոցը շպրտեց մի կողմ, խորը արտաշնչեց և ձեռքերը գործնականորեն իրար շփելով, մոտեցավ ընկերներին։*

*— Լսի՛ր, այս ի՞նչ ես անում,— դեռ մի կարգին չնայած, սկսեց նա դիտողություններ անել նկարող տղային,— ինչի՞ նման են այս ծաղիկը... այս ծառը...*

*— Գիտե՞ս ինչ, դու ավելի լավ է քո գործն արա,— ընդհատեց նրան տղան ու նորից հակվելով թերթի վրա՝ շարունակեց նկարել։*

*Մարինեն մի պահ ծզվեց տեղում, ապա մոտեցավ ավագ ջոկատավարի գրասեղանին, սկսեց աչքի անցկացնել նյութերը։*

*— Ֆիի՜, սա ի՞նչ հիմարություններ է դուրս տվել...*

— Ժամացույցը սարքում են միայն ժամագործները,— ասաց Օտիան։

— Իսկ փո՞ղ։ Ժամագործը առանց փողի հո չի՞ սարքի։

— Չգիտեմ... Ես... փող...— Օտիան մտածեց,— ես փող ունեմ,— ավելացրեց նա։

Մի քիչ հետո նրանք արդեն կանգնած էին ժամագործի ցուցափեղկի մոտ։ Աղջիկը բռնել էր ժամացույցը, իսկ Օտիան՝ դուրս մնացած մասերը։ Ժամագործը զննեց ժամացույցը, հետո գրպանը դրեց Օտիայի երեք ռուբլիանոցը և անցավ գործի։ Կես ժամից նրանք եկան։ Աղջիկը մեկ ականջին էր մոտեցնում կյանք առած ժամացույցը, մեկ նայում էր թվացույցին, նայում էր, թե ինչպես են թռչկոտում սլաքները, ինքն էլ էր թռչկոտում, Օտիայի ձեռքից բռնած։ Ծիծաղում էր, շաղակրատում, երգում... Օտիան դեռ երբեք չէր տեսել այսպիսի բարեձև ու գեղեցիկ աղջիկ։

Մուտքի մոտ տղան կանգ առավ.

— Դե ես գնամ։

— Իսկ արդո՞ւկը։

— Արդուկը հետո կնորոգեմ։

Օտիան պիտի շտապ վերադառնար տուն, քանդեր բոլորովին նոր արդուկը, որպեսզի ինչպես հարկն է ուսումնասիրեր նրա կառուցվածքը։

— Դե լավ, ինչ արած,— ասաց աղջիկը։

Օտիան կանգնել ու միտք էր անում։ Նոր միայն հիշեց իր չար որոշումը։ Համենայն դեպս կասեմ նրան, որ անտեղի ինձ ամբաստանեց։

— Կարծում ես... այն ժամանակ լուսամուտը...— նա լռեց ու տատանվեց։

— Ինչ ասացի՞ր,— ասաց աղջիկը,— ի՞նչ լուսամուտ։

Նրա աչքերի առաջ նորից պատկերացավ այն ամոթալի տեսարանը, երբ քեռի Նիկոն պոկում էր իր ականջները։ Հիշեց, որ վախկոտի պես, բերանը բաց արեց ու զռաց ամբողջ փողոցով մեկ. «Այդ ե՛ս չէի, ե՛ս չէի» և, վերջապես, ինչպես սարսափած տուն փախավ...

Նա անմիջապես ձայնը կտրեց և վախեցած նայեց աղջկան։ Չուզեց հիշեցնել, որ անարդար պատժված այն տղան և Օտիա Ճնարղնաձեն միևնույն մարդն է։



Թարգմ. Ա. ՍԱՀԱԿՅԱՆԻ

# Շ Ն Ա Գ Ա Յ Լ

ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ



Դարիս սկզբներին մեր կենդանական աշխարհը ուսումնասիրող օտարազգի կենդանաբանները գրել են, որ Հայաստանում շնագայլ չկա:

Քսանական թվականներին առաջին անգամ շնագայլի մի քանի մորթիներ ստացվեցին մթերման կետերում, որից հասկացվեց, որ այդ գազանը մուտք է գործել մեր երկիրը:

Որտեղի՞ց: Մուղանի դաշտից: Ի՞նչ ճանապարհով: Արաքսի հոսանքն ի վեր տարածվելով մտել է Մեղրու կիրճը, այնտեղից էլ անցել է Արարատյան դաշտը, ուր և հիմնավորվել է վերջնականապես:

Ուրիշ երկրներում, օրինակ, մեր հարևան Վրաստանում, Հյուսիսային Կովկասում և մանավանդ Հնդկաստանում ու մերձարևադարձային այլ երկրներում այս գազանն ապրում է գլխավորապես անտառներում, ջունգլիներում, թփուտներում: Բայց մեզ մոտ հանդիպում է միայն Մեծամորի և Արաքսի առափնյա եղեգնուտներում: Հենց այդ վայրերում էլ ես կատարում եմ այդ գազանների որսը. առաջին շնագայլը խփել եմ Այգր լճից Հոկտեմբերյան տանող ճանապարհի եզրին, քրդական փոքրիկ գյուղի ծայրին, ուր գիշերով կեր էր փնտրում տների մոտ: Երկրորդին հանդիպեցի Նախիջևանից այս կողմ՝ Արաքսի ափին: Մի թփի ետև քողարկված սպասում էի խուճապարարներին, որոնք գետի կողմից վարազներին խրտնեցնում-քշում էին դեպի իմ թաքստոցը, երբ խոզերի փոխարեն նոսր մացառուտում թխադարչնագույն մի կենդանի երևաց: Աղվեսից մեծ էր, դունչը նրա դնչի նման սուր, բայց պոչը՝ կարճ: Էգ և փոքր գայլի էր նման, բայց ավելի նրբագեղ կազմվածք ուներ: Կրակեցի՝ փախավ վիրավոր: Երկրորդ կրակոցին ընկավ: Մաշկելուց առաջ մոտիկից զննեցի այդ գազանին. ոտքերը բավական երկար էին, դունչն ու պոչի ծայրը սև, ճակատը հարթ էր, ականջները՝ փոքր:

Կենդանաբաններն ասում են, որ արտաքին այդպիսի նշաններ ունեն նաև ուրիշ երկրների շնագայլերը, անգամ Հնդկաստանինը, Իրանինը և Աֆղանստանինը, այնպես որ նրանց իրարից զանազանել և աշխարհագրական ձևերի բաժանելը դժվար է:

Է՜հ, իզուր խրտնեցրինք վարազներին, սրա ո՛չ միսն է ուտվում, ո՛չ մորթին է բանի պետք: Միակ լավ բանը, որ արինք, դա այն էր, որ այստեղի թռչուններին ազատեցինք այս գիշատիչից: Մասամբ փրկեցինք նաև այն ձկներին, որոնք Արաքսի հորդացած ջրերն իջնելուց հետո, մնում են ջրափոսերում և զոհ գնում նաև շնագայլերին: Այլև օգուտ տվինք նապաստակի ձագերին, գորտերին և եղեգնուտներում բույն շինող կամ թաքնվող այլևայլ կենդանիների, որոնց բոլորի որսով էլ զբաղվում է շնագայլը, կենդանի արարածների տաք-տաք միսն ու արյունը նա ամեն ինչից վեր է դասում: Դրանով էլ վնասակար է այդ գա-

---

*— Սպասի՛ր, սպասի՛ր,— գլուխը բարձրացրեց նյութեր արտագրող աղջիկը:— Մարության հոդվածի մասի՞ն ես ասում...*

*Մարինեն մի պահ միայն շփոթվեց.*

*— Ամեն ինչ շիլաշփոթ եք արել: Մարությանինը հարկավոր էր առանձնացնել, ոչ թե խառնել մյուսներին.. Քաշվիր մի կողմ, ես Մարության հոդվածից էլ կսկսեմ...*

*Նա արմունկով հրեց աղջկան, չնկատելով կողքի թանաքամանը: Թանաքամանը շուռ եկավ, և թանաքը տարածվեց պատի թերթի վրա, ծածկելով ուլունքի պես շարված գեղեցիկ տողերը:*

*Ընկերները ապշած նայում էին Մարինեին:*

*— Լսի՛ր, Մարինե՛, մենք առանց քեզ կարգին աշխատում էինք, եկար ու ամեն ինչ խառնեցիր իրար...*

*— Ի՞նչ... խանգարեցի՞... Պա՜հ, որ այդպես է կգնամ,— ուռած-փքված շուռ եկավ և գնաց, դուռը ետևից շրխկացնելով:*

*— Այ թե ո՛ւմ մասին պետք է գրել պատի թերթում,— ասաց նկարող տղան:*

*— Ճիշտ է:*

*— Դե որ ճիշտ է՝ եկեք... Ոնց որ պետք է դաս տանք դրան:*

*— Եկեք...*

*Խմբակը նոր եռանդով գործի անցավ:*

*Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ*



կանը ,ուստի թեև մեկնից ոչ ոք հատկապես չի զբաղվում նրա որսով, բայց հանդիպելիս անպայման կրակում է վրան՝ տարվա բոլոր եղանակներին: Ավելացնենք նաև այն, որ գիշատիչ լինելով շնագայլը չի խորշում նաև պտուղներից, բուսական կերից. նա ամենակեր է: Այսպես, իմ մի ընկերը նրանց տեսել է ծառի տակ թութ հավաքելիս, իսկ ես շնագայլեր եմ փախցրել որսորդական տնտեսության Այղր լճի բոստանից, ուր գիշերով ձմերուկ ուտելու էին գալիս:

Ծանոթանանք շնագայլի բնավորության մի քանի գծերին:

Նախ՝ գող է, հանդուգն գող: Հանդգնությունն այն աստիճանի է հասնում, որ 1946 թվականի ձմռանը Մուղանի դաշտում, երբ կրակ էի անում, շուռ եկա տեսա խորովածացու միսը չկա. օրը ցերեկով փախցրել էր մոտիցս: Անգլիացի առևտրականները 16-րդ դարի երկրորդ կեսին այդ վայրերով Պարսկաստան գնալիս շատ նեղություն կրեցին շնագայլերից, որոնք օրը ցերեկով վրաններից փախցնում էին նրանց ուտելիքի պաշարը:

Հետո, շրջում է ավելի ուժեղ գազանների հետ և կերակրվում է նրանց որսի մնացորդներով: Ասում են, նույնիսկ հոտոտելով գտնում ու մատնում է որևէ անմեղ կենդանու և որպես հատուցում ստանում է այն, ինչ իրենից ուժեղը թողնում է այդ կենդանին որսալուց և լափելուց հետո:

Իր այս արարքների, ուժեղ գազաններին ծառայելու և նրանց առաջ քծնելու պատճառով, շնագայլը համարվում է անպատիվ, ստոր, վեհությունից զուրկ և արհամարհանքի արժանի արարած:

Այնուհետև, գիշերները հավաքվում են մի տեղ ու կցվելի ձայներ հանում. իրենց խելքով համերգ են տալիս: Մի անգամ տասն օր մնացի Մուղանի Սարկսու գետի ափին (վարազի որսի էի գնացել) և ամեն գիշեր այնպիսի դժոխային ձայներ էի լսում այդ գետի եղեգնուտից, այնպիսի լվլվոց ու կաղկանձյուն, այնպիսի ողբ ու կական և մինչև լույս այնպիսի մղձավանջ էի ապրում, որ եթե մի քանի օր էլ այդպես շարունակվեր, հավանաբար նյարդային ցնցում ստանայի:

Բայց պիտի զովենք այդ գազանի բնավորության մի գիծը՝ պակաս արյունարբու է շատ ու շատ գազաններից. սպանում է այնքան, որքան հարկավոր է կշտանալու համար, մինչդեռ, ինչպես տեսանք նախորդ գլուխներից, գայլը, աքիսը, ժանտաքիսը, կզաքիսը, ջրասամույրը ջարդում, խեղդում, սպանում են հանդիպած բոլոր կենդանիներին, անկախ այն բանից, այդքան ուտելիքն իրենց հարկավո՞ր է, թե՞ ոչ:

Գոյություն ուներ այն կարծիքը, թե վաղուց չէ, որ շնագայլը մուտք է գործել Սովետական Հայաստան, և տիաձ նորություն է այդ կենդանին մեկ մոտ: Բայց պարզվեց, որ շատ հնում շնագայլեր են բնակվել պատմական Ուրծի լեռներում. Վեդիից արևելք, Ջրնջըրվի հանդում մի քարանձավ կա, որի խորքերից մեր գիտնականները շնագայլի ոսկորներ են հանել՝ մի քանի հազար տարվա հնություն ունեցող: Այդ վայրերը այժմ մերկ են և անհարմար շնագայլի բնակության համար, բայց հայտնի է, որ 2—3 հազար տարի առաջ Ուրծի լեռներում անտառներ կային, և այդ բանի ապացույցներից մեկն էլ նույն քարանձավում հայտնաբերված եղջերուների մնացորդներն են:

Հետագայում անտառները վերացել են, նրանց հետ էլ նրանց բնակիչները՝ եղջերուներն ու շնագայլերը:

Թփածս գետերի առափնյա մոլուտներում, եղեգնուտում, մացառուտի մեջ մայր շնագայլը փորում է իր որջը կամ խլում է աղվեսի, գորշուկի պատրաստի բները, հարմարեցնում իր չափերին ու ճաշակին և, 60—62 օր հղի մնալուց հետո, ապրիլի տաք օրերին աշխարհ է բերում 2—3 ձագ:

Ուրեմն պտղաբեր չէ իր ցեղակից աղվեսի և գայլի նման: Բայց շնագայլն արագ է բազմանում: Դա կարելի է բացատրել նրանով, որ իր բնակության վայրերում, մարդուց բացի, թշնամիներ չունի:

Շնազգի գազաններից մնաց աղվեսը, նա էլ այնքան ծանոթ կենդանի է, որ լավ է վրայով անցնենք և հաջորդ համարում ծանոթանանք մի անծանոթ գազանի՝ բորենուն:



## ԾՂՐԻԴԸ

*ԽԱՉԻԿ ՀՐԱՉՅԱՆ*

Ծղրիդն ապրում էր
Տատիկի տանը
Ու նվագում էր
Միշտ էլ նույն բանը.
— Ծը՜ռ, ճը՜ռ:

Մութը պահվում էր
Սև դռան տակը,
Աղքատ էր երգչի
Համերգացանկը.
— Ծը՜ռ, ճը՜ռ...

Երկար ու երկար
Ձմռան գիշերը
Երգում էր նա միշտ
Իր հին հուշերը.
— Ծը՜ռ, ճը՜ռ:



# Մ Ա Ր Դ Ն   Ի Ր   Ա Ն Ո Ւ Ն Ո Վ

*ԱԼ. ԳՈՐԲՈՎՍԿԻ*

## ԹՈՒՅԼ ՏՎԵՔ ՆԵՐԿԱՅԱՆԱԼ

Դուք մարդուն առաջին անգամն եք տեսնում: Ոչինչ չգիտեք նրա մասին, նա ևս ձեր մասին ոչինչ չգիտի: Ի՞նչն եք համարում կարևորագույն՝ ամենից առաջ միմյանց հայտնելու համար: Ձեր մասնագիտությո՞ւնը: Բնակավա՞յրը: Ընտանեկան դրությո՞ւնը:

Ոչ: Դուք ասում եք այն, ինչ ամենափոքր պատկերացում իսկ չի տա ձեր մասին իբրև մարդու՝ ձեր անունն եք տալիս:

— Ալեքսանդր:

— Օքսանա:

Բայց այս բառերից հետո դուք միմյանց մասին չեք իմանա ոչինչ ավելի, քան գիտեիք մինչ այդ:

Ինչո՞ւ է, ուրեմն, այդպես արվում:

Մենք խոսեցինք սեփական անունը թաքցնելու մասին: Դրա պատճառը վախն էր օտար մարդուց, որի մտադրությունները թըվում էին վտանգավոր ու թշնամական: Եվ ընդհակառակը: Երբ երկու մարդ ուզում են մեծագույն վստահություն հայտնել միմյանց հանդեպ՝ տալիս են իրենց անունները:

Այսպես, անունների փոխանակությունը, հավասարապես մատչելիությունը դառնում է երաշխիք փոխադարձ բարյացակամության, բարի հարաբերությունների:

Ահա թե ինչու, մարդու հետ ծանոթանալիս, առաջին բանը, որ ուզում ենք իմանալ՝ նրա անունն է:

Դրանից հետո արդեն սովորաբար ասում ենք շուտասելուկի պես՝ «Շատ հաճելի է» կամ՝ «Շատ ուրախ եմ»:

Եվ այսպես ծանոթությունը համարվում է կայացած:

Իսպանացիները ծանոթանալիս ասում են՝ «Ձեր խոնարհ ծառան»: Եվ, իհարկե սա չի նշանակում, թե դուք ձեր ծանոթին կարող եք հրամայել տանելու ձեր ճամպրուկը կամ մաքրելու ձեր կոշիկները:

Մեքսիկացին, անունների փոխանակումից հետո, անպայման կասի՝ «Ձեր համար այսինչ տունը» և կտա իր տան համարը:

— Ձեր տունը ձեր տրամադրության տակ է,— կավելացնի նա,— եկեք և զգացեք ձեզ ինչպես սեփական հարկի տակ:

Բայց չսխալվեք: Եթե այն մարդը, որին ասվել է այս դարձվածքը, վեր կենա ու գնա հասցեով և ուրիշի տանն իրեն այնպես պահի, ինչպես սեփական հարկի տակ՝ նրան բավական շուտ կհասկացնեն իր մոլորությունը:

Օրինակների թիվը կարելի է ավելացնել:

Ֆոնվիզինի «Տհասը» պիեսում կա մի տեսարան, ուր Պրավդինը Միլոնին ներկայացնում է մի երրորդ գործող անձի.

«ՊՐԱՎԴԻՆ».— Թույլ տվեք ներկայացնել պարոն Միլոնին, իմ ճշմարիտ բարեկամին:

ՄԻԼՈՆ.—Ինձ համար ճշմարիտ երջանկություն կլինի, եթե արժանանամ ձեր բարյացակամությանը և ողորմածությանը»:



Եթե մեր օրերում որևէ մեկի հետ ծանոթանալիս դուք փորձեք այսպիսի ճոռոմ խոսքեր ասել՝ ամենքը կզարմանան:

Բայց մի՞թե որևէ մեկի հետ ծանոթանալը ձեզ համար անպայման «շատ հաճելի է» լինում կամ այդ ծանոթությամբ «շատ ուրախ» եք զգում: Ոչ, իհարկե: Բայց և այնպես դուք ասում եք իրենց փաստական իմաստը վաղուց ի վեր կորցրած այդ խոսքերը: Ճիշտ այդպես էլ, «ձեր խոնարհ ծառան» ասող մարդը բնավ էլ մտադիր չէ ձեր ծառան դառնալ, իսկ իր տունը ձերը համարող մեքսիկացին իր տան բանալիները ձեզ մատուցելու մտադրություն չունի:

Այս բոլորը զուտ ծիսական արտահայտություններ են, բարյացակամ վերաբերմունքի երաշխիքի խոսքեր, որ ասվում են ծանոթանալու ժամանակ սեփական անունը հայտնելիս: «Դուք ինձ դուր եք գալիս, ես ձեր անունը ի չարը չեմ գործադրի»,— սա է նման փոխադարձ հավաստիացումների իմաստը:

## ՔԱՆԻ՞ ԱՆՈՒՆ Է ՀԱՐԿԱՎՈՐ ՄԱՐԴՈՒՆ՝

Կար ժամանակ, երբ մարդուն մի անունը բավական էր: Նրա շփման միջավայրը մեծ չէր: Հետզհետե ամեն մարդու գործունեության ոլորտում հայտնվեցին ավելի ու ավելի մեծաթիվ մարդիկ: Նրանց մեջ անխուսափելիորեն պատահում էին նաև նույն անուններն ունեցող անձնավորություններ:

Ինչպե՞ս վարվեին, օրինակ, եթե Սուզդալի իշխանի անունն էլ Վասիլի էր, նրա ձիապանի անունն էլ: Այսպիսի «վիրավորական» նույնությունից խուսափելուն օգնում էր անունների փոքրացուցիչ մասնիկը, համաձայն որի, «ձիապան Վասիլի» գոյություն չուներ, կար «ձիապան Վասկա»: Ե՞վ մյուսները, և՜ ինքը իրեն կարող էր միայն այդպես կոչել:

Իսկ ինչ վերաբերում է խնդրա-

---

*Սկիզբը՝ «Պիոներ»-ի 1970 թ. № 1-ում*

# Է  Մ Ա Ր Դ

*Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ*

գրերին, ապա դրանց տակ «Միտկայի» կամ «Իվաշկայի» փոխարեն իսկական անունը գրելը համարվում էր ոչ միայն անվայել, այլև մեծագույն հանդգնություն:

Երբ 1701 թվականին Պետրոս Առաջինը փոքրացուցիչ անունները հրամանագրով արգելեց, շատերը տարակուսանքի մեջ ընկան: Ինչպե՞ս կարելի էր ինչ-որ մի «Իվաշկայի» կոչել այնպես,



ինչպես իր տիրոջը՝ «Իվան»: Ճիշտ է, այդ ժամանակների Ռուսաստանում արդեն սկսել էր գործածության մեջ մտնել հայրանունը: Սկզբում այդ արտոնվում էր միայն թագավորներին, իշխաններին և նրանց հարազատներին: Այդ շրջանից դուրս ոչ ոքի մըտքով իսկ չէր անցնի, որ իրեն անուն-հայրանունով կոչեն: Երբ Բոգդան Խմելնիցկին պաշտոնական թղթերում մի քանի անգամ այդպես ստորագրեց (Բոգդան Միխայլովիչ), մոսկովյան պաշտոնյա մարդիկ նրան հասկացրին, որ նա իրեն «մեծարում է անարժան կերպով»:

Հայրանունը, պատվավոր տիտղոսի նման, շնորհվում էր հատուկ ծառայությունների համար: Այսպես, Իվան Ահեղը հայրանուն շնորհեց գերմանացի օպրիչնիկ Շտադենին:

«Երբ մեծ իշխանը Ստարիցա ժամանեց,—գրել է Շտադենը,— ստուգում արվեց, որպեսզի մեծ իշխանը կարողանա իմանալ, թե ով է մնում իր հետ և հաստատորեն իր կողմը բռնում: Հենց այդ ժամանակ էլ մեծ իշխանն ասաց ինձ. «Այսուհետև դու Անդրեյ Վոլոդիմիրովիչ կկոչվես»: «Վիչ» մասնիկն ազնվական տիտղոս է: Այդ ժամանակից ես հավասարվեցի իշխաններին ու բոյարներին»:

Հայտնի է, որ այդպիսի պատվի (հոր անունով Ֆյոդորովիչ կոչվելու) Պետրոս առաջինը 1697 թվականին արժանացրեց Յակով Դոլգորուկուն:

Ավելի ուշ, Եկատերինա Երկրորդի օրոք, կազմված էր ցուցակն այն սակավաթիվ անձանց, որոնց տրված էր հայրանուն կրելու պատիվը:

Եվ այսպես, հայրանվամբ կոչվելն ամեն մարդու բան չէր: Բայց և իր դիրքի շնորհիվ «երկրորդ անուն» կրելու իրավունք ունեցող մարդուն այլ կերպ կոչելը հավասարապոր էր անարգանքի :

Հայրանվան նման, ազգանունը նույնպես երկար ժամանակ մնում էր դիրք ունեցող ազնվական մարդկանց արտոնությունը: Հաճախ ազգանուններն առաջանում էին տեղանուններից: Այդպես են գոյացել Վյազեմսկիները, Շույսկիները և այլն:

Կան իշխաններ, որ իրենց ազգանուն-մականունները ստացել են այն վայրերից, ուր հաղթանակներ են տարել՝ Դոնսկոյ, Նևսկի:

Ինչ վերաբերում է Ռուսաստանի հասարակ մարդկանց կանգվածներին, ապա նրանց համար ազգանունները երկար ժամանակ «անմատչելի շքեղություն» էին համարվում: Ահա թե ինչ է գրված անցյալ դարի վերջում լույս տեսած մի տեղեկատուի մեջ.

«Մեզանում ազգանուն կրելը միայն ազնվականության և բարձր դիրքի վաճառականության շնորհն է: Մանր առևտրականները, քաղաքաբնակ և գյուղաբնակ բնակչության վիթխարի զանգվածը ազգանուն կամ բնավ չունի, կամ



դրան համապատասխանում են պատահական և անկայուն մականունները»:

Որքան էլ մեծ լիներ այն շտեմարանը, որից ազգանուններ էին քաղվում, դա, այսուհանդերձ, անսպառ չէր: Անխուսափելիորեն հայտնվում էին նույն ազգանունը կրողներ: Եվ հատկապես բարձր դիրք ունեցողները հիվանդագին էին ընդունում այդպիսի զուգադիպությունները:

Հաճախ մականունները, իբրև ազգանուն, լրացնում էին հայտնի մարդկանց անունները՝ Պիպին Կարճահասակ, Վասիլի Խավարասեր: Իհարկե, հաճելի է լինել ոչ թե պարզապես Ռիչարդ, այլև Առյուծասիրտ Ռիչարդ կամ ոչ թե պարզապես Արա, այլ Արա Գեղեցիկ: Երևի Ցեյլոնի թագավորի համար փոքր-ինչ վիրավորական էր ճաղատ Նագա կոչվել կամ մյուս թագավորի, որ Ծուռքիթ մականունն է ունեցել:

Ձեզ ծանո՞թ է հին հունական փիլիսոփա Արիստոկլեսի անունը: Մտաբերելու ջանք մի՛ արեք, չեք հիշի: Այդ անվամբ նա հայտնի էր միայն իր ծնողներին: Պատմությունը մոռացության է տվել նրա անունը և միայն մականունն է պահել՝ «Լայնարձակ»: Հունարեն՝ «Պլատոն»: Այս անունն արդեն լավ ծանոթ է ամենքին:

Այսօր մենք չենք կարող պատկերացնել, թե մարդիկ ինչպե՞ս



# ԳՅՈՒՂԱՑԻՆ ՈՒ ԱՐԱԳԻԼԸ



Մի անգամ մի գյուղացի ցանց է դնում իր արտում, որ հացահատիկ գողացող կռունկներին և սագերին բռնի: Շատ սագեր ու կռունկներ ընկնում են ցանցի մեջ, դրանց հետ էլ՝ մի արագիլ:

Դիմելով գյուղացուն՝ արագիլն աղերսում է.

— Բա՛ց թող ինձ, ես ո՛չ սագ եմ, ո՛չ էլ կռունկ, այլ՝ մի խեղճ, անվնաս արագիլ եմ: Ես չեմ եկել քո հացահատիկը գողանալու: Ես միայն պատահաբար քո արտի վրայով էի թռչում:

— Ես չեմ առարկում, հավանական է, որ քո ասածը ճիշտ լինի,— պատասխանում է գյուղացին,— սակայն քանի որ քեզ բռնել եմ գողերի հետ, ապա դու էլ պետք է կրես նույն պատիժը:

# ՄԵՂՈՒՆ ՈՒ ԱՂԱՎՆԻՆ



Մի օր, մեղուն ջրի մեջ է ընկնում: Խեղճը այնքան է թրջվում, որ չի կարողանում ո՛չ լողալ, ո՛չ էլ թռչել:

Աղավնին, տեսնելով մեղվի անել վիճակը, խղճում է նրան: Նա իր կտուցով մի տերև է վերցնում և այն գցում ջրի մեջ՝ ճիշտ մեղվի մոտ: Մեղուն մագլցում է տերևի վրա, իսկ ջրի հոսանքը նրան բարեհաջող կերպով ափ է հանում:

Մի օր նույն աղավնին իր համար բույն էր պատրաստում: Նա անընդհատ դեսուդեն էր թռչում՝ տերևներ և չոր խոտ հավաքում: Մի չար տղա տեսնում է աղավնուն և ուզում է քարով նրան սպանել: Նկատելով այդ, մեղուն մոտենում է և խայթում տղայի ձեռքը: Վերջինը ցավից բաց է թողնում քարը: Այսպիսով, մեղուն իր հերթին փրկում է աղավնու կյանքը:

*Անգլ. թարգմ. ՍԱՐԳԻՍ ՋԵՐՋԵՐՅԱՆԻ*

էին ապրում և իրար հետ կապ պահպանում հենց միայն անուն ունենալով: Բայց դա նշանակո՞ւմ է, արդյոք, թե մարդ ինչքան շատ անուն ունենա, այնքան լավ:

Հին Կորեայում, օրինակ, տղամարդիկ հինգական անուն էին կրում:

Սակայն հինգ անունն էլ վերջնասահման չէ: Թագավորական Իսպանիայում ավնվական մարդը իրեն անարգված կզգար ընդամենը 4—5 անուն ունենալով, ինչ-որ արհեստավորի կամ սափրիչի նման: Սովորաբար յոթ կամ նույնիսկ ութ անուն էին ունենում:

Բայց անունների այդ երկար ցանկը կրողների գոռոզամտությունը հենված էր սեփական անտեղյակության վրա: Ինչպե՜ս կհուզվեր յոթ-ութ անուն կրող իսպանական հիդալգոն, եթե իմանար, օրինակ, որ Բաբելոնում նա ունեցել է մի մրցակից, որ հիսուն անուն է ունեցել: Դա Եա աստվածն է: Էլ ավելի առաջ այս յուրահատուկ «մրցության» մեջ նշանավորվել է Օզիրիսը: Սա շուրջ հարյուր անուն է ունեցել:

Բայց Իկիդա աստվածուհին բոլորին էլ ետ է թողել: Այս պատվարժան տիկինը կրել է տասը հազար անուն: Մի րոպե պատկերացրեք, որ եթե դուք այդքան անուններ ունենայիք՝ ի՞նչ անհարմար վիճակի մեջ կընկնեիք ամեն քայլափոխի:

*Թարգմ. Ս. ԱՅՈՒՆՑԻ*

## ԴՐՈՒԺԻՆԱՆԵՐՈՒՄ



## ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ

# ԱՇԱԿԵՐՏԱԿԱՆ ԲՐԻԳԱԴԻ ԵՎ ՊԱՏԱՆԻ ՀՈՐԹԱՊԱՀՆԵՐԻ ՄԱՍԻՆ



ուցե շատերը չգիտեն, թե ինչ է լուսաբացը, ինչպես է բացվում պայծառ օրը: Գուցե շատերը քնից արթնանում են միայն այն ժամանակ, երբ արևի չարաճճի շողերը պատուհանի մի անկյունից ներս մտնելով՝ խանգարում են քաղցր քունը... Բայց, ա՛յ, Վեդիի № 1 միջնակարգ դպրոցի համարյա բոլոր աշակերտներն կգացել են լուսաբացի հմայքը: Մութը կամաց-կամաց հեռանում է շրջակա բլուրներից, մոտիկ բարդենու գագաթը պայծառորեն լուսավորվում է, թևերը լայն բացած՝ թռչում է արագիլը, ու դիմացի լեռան ետևից դանդաղորեն իր պռունկն է հանում արևի հրագունդը: Դպրոցականները մի պահ կտրվում են աշխատանքից, հմայվում գեղեցիկ տեսարանով ու հետո նորից շարունակում իրենց գործը:

Դպրոցի ծերունի պահակը, որ հայրենադարձ է, կյանքում շատ դառնություններ է տեսել, բերկրանքով է նայում երեխաներին:

— Աչքիս առաջ խոպանը դարձրին այգի,— ասում է նա դպրոց այցելող հյուրերին:

Մի քանի տարի առաջ այստեղ մի խոր հեղեղատ էր, որ ավելի ու ավելի էր մեծանում անձրևներից հետո: Վարար ջուրը քերում էր ափը, պոկում տանում հողը, ու մնում էին ողորկ քարակույտերը:

Բայց շուտով շինարարներ եկան, չափեցին, ձևեցին, շինանյութ բերեցին և ավանի մի ծայրում, ուր միայն տատասկ ու փուշ կար, սկսվեց նոր դպրոցի շինարարությունը: Հենց այդ ժամանակ էլ աշակերտներն սկսեցին դիմավորել լուսաբացը՝ բահն ու քլունգը ձեռքներին, հեղեղատը հող լցնելիս, առուներ բացելիս: Իհարկե, դժվար կլիներ երեխաների գործը, եթե օգնության չգային ծնողները, ավանի մարդիկ: Մի քանի կազմակերպություններ երեխաներին տրամադրեցին ավտոմեքենաներ, շինարարական գործիքներ և շինանյութեր:

Դժվարություններն արդեն ետևում են: Եթե ուզում եք կգալ աշխատանքի բերկրանքը, հյուր եղեք նրանց: 2,5 հեկտար տարածության վրա կառուցվել է մի իսկական սպորտային համալիր, որն ունի երկու բասկետբոլի, երկու վոլեյբոլի, ձեռքի գնդակի հրապարակներ, 220 մետր երկարությամբ վազքուղի, թռիչք բարձրության, թռիչք երկարության, գնդի հրման սեկտորներ: Դպրոց տանող բոլոր ճանապարհներն արդեն ծառապատված են, ստեղծված են փոքրիկ պուրակներ, բարեկամության այգի՝ 450-ից ավելի ծառատեսակներով:

Հարկավոր է հիշել նաև մի այլ բրիգադի, որը նույնպես դպրոցի հպարտությունն է: Սրանք նույնպես մասնակցել են դպրոցի բարեկարգմանը, բայց բրիգադի անդամներն ունեն նաև մի այլ զբաղմունք, որ նրանց հրապուրում ու տանում է դեպի անասնապահական ֆերմա:

...Չորս տարի առաջ էր: Ավագ ջոկատավար Լենա Հայրապետյանը դրուժինայի խորհրդի նիստում առաջարկեց օգնել անասնապահներին: Շատերը ցանկություն հայտնեցին, ցուցակագրվեցին: Այդ օրվանից սկսվեց դպրոցի և անասնապահական ֆերմայի բարեկամությունը: Ճիշտ է, առաջ չէր թույլատրվում դժվար գործեր կատարել, հանձնարարում էին հորթերի ջրամանները լվանալ, մաքրել հատակը: Բայց շուտով երեխաներին վստահեցին, ավելի ու ավելի բարդ գործեր հանձնարարեցին: Արտավազդը, Արնիկը, Սուսաննան, Թագուհին դարձան անասնապահների լավ բարեկամները, նրանց օգնականները: Անասնապահ Շուրիկ Գալստյանը հիանալի օգնականներ ունեցավ հանձինս պիոներների: Հիմա նրանք ոչ միայն խնամք են տանում հորթերին, այլև իրենց մասնակցությունն են բերում կովերի մեքենայացված կթին, յուղայնությունը որոշելուն:

Այսպես՝ դասերից դուրս, Վեդիի դպրոցականներն ապրում են աշխատանքային ուրախ առօրյայով:

*ԱԼԲԵՐՏ ՓԱՐՍԱԴԱՆՅԱՆ*




# ՏԻԵԶԵՐԱԿԱՆ ՏԵԽՆԻԿԱՅԻ ԾԱՌԱՅՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԵՐԿՐԻՆ

Մարդը ոտք դրեց Լուսնի վրա: Այսօր դժվար թե գտնվի մեկը, որ չհիանա այդ հրաշքանման իրադարձությամբ, մարդու մտքի և հոգու այդ անօրինակ խիզախումով: Ընդամենը տասներկու տարի (սովետական առաջին արբանյակի արձակումից), և ահա նվաճված է տիեզերական առաջին հանգրվանը:

Այնուամենայնիվ շատերը իրավացիորեն կարող են մտածել. այժմ, երբ Երկրի վրա ապրող մարդը դեռևս հազար ու մի կարիքներ ունի, երբ շատ երկրներում դեռ չի վերացել սովը, մարդիկ չունեն բնակարան, հագուստ և այլն, ժամանա՞կն էր արդյոք այդքան մեծամեծ ծախսերի գնով ստեղծել մեխանիզմներ՝ մեկ անգամ երկինք նետելու համար:

Բայց ահա եկեք մոտիկից ծանոթանալով տեսնենք՝ դա իրո՞ք մարդկային միջոցների շռայլ վատնում է ինչպես եգիպտական բուրգերի կառուցումը, թե՞ Երկրի վրա կյանքը բոլոր կողմերից առաջ մղող մի ուժ, որը «զուտ» գիտական հարցերի լուծումից բացի, բուռն կերպով աջակցում է ավելի արագ և հեշտ ձեռք բերելու նույնիսկ ամենօրյա հացը, կոշիկը, բնակարանը:





Մարդկությունը իր պատմության մանկական շրջանից սկսած, երբ դեռ նոր է «աչք բացել», հետաքրքրվել է իր շրջապատով, ձգտել ճանաչել այն և, ճանաչելով, օգտվել նրա բարիքներից ու միաժամանակ խուսափել հնարավոր վտանգներից: Այդ հետաքրքրությունը բազմաթիվ դարերի ընթացքում մարդուն հասցրեց աշխարհագրական մեծ հայտնագործությունների, բնության ճիշտ և բազմակողմանի ըմբռնմանը, իր սեփական ուժերի ու հնարավորությունների ընդլայնմանը: Եվ վերջապես, տիեզերքի ուսումնասիրման բնագավառում ձեռք բերած նորագույն նվաճումները է՛լ ավելի ինքնավստահություն ներշնչեցին նրան, տվեցին նոր պատկերացումներ աշխարհի մասին և աննախընթաց կերպով առաջ մղեցին գիտության ու տեխնիկայի բոլոր բնագավառները: Տիեզերական տեխնիկան բազմապատիկ արագացրեց մեր ճանաչողության պրոցեսը ոչ միայն վերերկրային տարածության ուսումնասիրման բնագավառում, այլև հենց մեր շրջապատի՝ հողե այն գնդի մասին, որի վրա ապրում ենք: Չէ՞ որ հողագունդն ինքը առայժմ մինչև վերջ ուսումնասիրված չէ: Եվ ահա միայն արբանյակի շնորհիվ այժմ հնարավոր դարձավ արագ ու նյութական քիչ ծախսումների միջոցով, վերևից՝ տիեզերական տարածությունից, ճշտել Երկրի աշխարհագրական վայրերի տեղադրությունը, չափերը, ծովերի ու գետերի ջրի պաշարներն ու բաղադրությունը, ջերմաստիճանը, սառցասարերի ու ջրային հոսանքների ուղղությունը, մթնոլորտային երևույթները և այլն: Աշխարհի խուլ ու անմատչելի վայրերում, միայն արբանյակային դիտարկումով է հնարավոր դառնում հայտնաբերել նորանոր հանքավայրեր, պարզել Երկրի ապառների բաղադրությունը, նույնիսկ ստորերկրյա ջրերի գոյությունը: Այդկերպ «վերևից» հայտնաբերվեցին նիկելի հանքերը Մանիտոբում, երկաթահանքերը Տիմմինսում, Օնտարիոյում (Կանադա): Այսպես, հետզհետե ճշտվում են մեր հողագնդի բնական պաշարները, իսկ դա խիստ անհրաժեշտ է կանխորոշելու համար ապագան, հեռանկարները:

Մինչև վերջին ժամանակներս անհավատալի էր թվում, թե հնարավոր : գտնել մի միջոց, որով օդերևութաբանները կարողանան եղանակի կանխատեսումները կատարել երկար ժամկետի համար՝ ամբողջ աշխարհի մասշտաբով: Դա սովորական եղանակով գլուխ բերելու համար այնքան միջոցներ ու մարդկային ուժեր էր պահանջում, որ այդ մասին մտածելն ավելորդ :ր թվում: Բայց ահա սովետական առաջին արբանյակի արձակումը գիտնականներին մղեց այդպիսի դիտարկման հնարավորությունն օգտագործելու գաղափարին: Այժմ սովետական «Մետեոր» և ամերիկյան «Տիրոս» արբանյակային սիստեմները միասին հետևում են մթնոլորտային երևույթներին, հեռացույցով և լուսանկարչությամբ «գրանցում» օդերևութաբանական փոփոխությունները, տեղեկություններ ստանում նաև Երկրի զանազան կայաններից ու լողացող բալոններից, ապա արդյունքները հաղորդում համաշխարհային օդերևութաբանական երեք կենտրոններին՝ Մոսկվա, Մելբուռն ու Վաշինգտոն: Տվյալներն այնտեղ մշակվում են հաշվիչ մեքենաների միջոցով և ապա եղանակի տեսությունն ուղարկվում է տեղական կենտրոններին: 1967

թվականից, օրական երկու անգամ, տեղական կենտրոններն ստանում են մթնոլորտային փոփոխությունների լուսանկարները, և ամեն պատկերի հաղորդման վրա ծախսվում է ընդամենը չորս րոպե։

Օվկիանոսների ամենօրյա դիտարկմամբ, որով կանխատեսվում է փոթորիկի առաջանալու հնարավորությունը, նրա ուժն ու տևողությունը, ապահովվում է նավագնացության անվտանգությունը։ Միայն երեք արբանյակ կարող են այդպես սպասարկել օդային և ծովային տրանսպորտին։ Եղանակի ճշգրիտ կանխատեսումը հետագայում մեծապես կօգնի գյուղատնտեսությանը, որպեսզի ժամանակին կատարվեն վար ու ցանքը, բերքահավաքը, ճիշտ օգտագործվեն ոռոգելու ջրի պաշարները, հանկարծակիի չբերեն փոթորիկն ու հեղեղումները։ Որոշելով բույսերի հիվանդությունների գլխավոր օջախները և տարածման սահմաններն աշխարհում, ինչպես և ցածր բերքատվության այլ պատճառները, հնարավոր կդառնա ժամանակին կանխել ու փրկել գյուղատնտեսական արտադրանքը ամբողջ մարդկության համար։

Տիեզերական տեխնիկայի մեծագույն ծառայությունը մարդկությանը, թերևս, միջազգային կապի նոր ձևի հայտնագործումն էր, երբ արբանյակի միջոցով հնարավոր դարձավ ամբողջ մայր ցամաքներ սպասարկել՝ մեծ արագությամբ, քիչ ծախսումներով, իրականացնելով հեռագրի, հեռախոսի, հեռուստատեսության, զանազան դիտարկումների հաղորդումներ։ «Մոլնյա» տիպի 6 արբանյակները սպասարկում են ՍՍՀՄ-ի ամբողջ տերիտորիան, իսկ ամերիկյան 4 արբանյակները՝ Խաղաղ և Ատլանտյան օվկիանոսների շրջակա երկրները։ Երկրային 20 կայաններ արբանյակներից ընդունում են հեռուստատեսության ծրագրերը, թերթերի մատրիցաները, օդերևութաբանական տվյալները։ Ուսումնական և առևտրական նպատակներով այժմ արբանյակային այդպիսի սիստեմներ են ստեղծում ԱՄՆ-ը, Կանադան, Ճապոնիան, Հնդկաստանը, Ավստրալիան։ Նման մեծ մասշտաբի կապի ցանց այժմ հնարավոր չէր լինի ստեղծել այնպիսի ընդարձակ, բայց և տնտեսապես անզարգացած երկրում, ինչպիսին Հնդկաստանն է, եթե չօգտագործվեր տիեզերական տեխնիկան։

Արբանյակների շնորհիվ հետագայում անհամեմատ կբարելավվի կրթական գործը, մանավանդ այն երկրներում, որտեղ միլիոնավոր երեխաներ հնարավորություն չունեն դպրոց հաճախելու։ 1972 թվականին Հնդկաստանում փորձարկվելու է արբանյակային ուսուցումը ցածր դասարանների երեխաների համար։ Նույն տարում կփորձարկվեն նաև Աֆրիկայի և Հարավային Ամերիկայի երկրների համար ֆրանս-արևմտագերմանական արբանյակային սիստեմները։ Ճապոնացիներն այժմ պատրաստում են ուսումնական դասընթացներ, կինոնկարներ, որոնք արբանյակից կհաղորդվեն ոչ միայն Ճապոնիայի, այլև հարևան երկրների համար՝ մի քանի լեզուներով։

Այս բոլոր ծառայություններն արբանյակը մատուցում է «վերևից», մայր երկրից պոկվելուց հետո։ Սակայն դեռևս իր ծննդյան ու կազմավորման պահին և այնուհետև՝ աշխատանքի ընթացքում նա անընդհատ հուշում է Երկրի վրա ապրող մարդուն տեխնիկապես կատարելագործելու իր աշխատանքային գործիքները, հարստացնում է նրա միտքը, տիեզերական թռիչքների նպատակով ստեղծված տեխնիկան սիրով տրամադրում է նրան։

Գիտնականների կարծիքով, տիեզերքի նվաճման նպատակներով կատարվող նորանոր տեխնիկական գյուտերի շնորհիվ սովետական և ամերիկյան արդյունաբերությունը հեղաշրջվում է մի շարք բնագավառներում, և ամենից առաջ՝ նոր նյութերի ստացման, մետաղամշակության, ավտոմատացման, սարքերի գերմանրացման և մեխանիզմների հուսալիության։ Տիեզերական տեխնիկայի ստեղծման վրա աշխատող հազարավոր մասնագետների հայտնաբերած նորույթները հնարավորին չափով ներդրվում է «երկրային» արդյունաբերության մեջ, օգտագործվում է շինարարության, բժշկության, կուլտուրայի ու կենցաղի մեջ։

Այսպես. տիեզերագնացի համար ստեղծված հատուկ գործվածքը, որը շատ բարակ է, ամուր, ջերմաանթափանց ու թեթև, այժմ մասսայաբար թողարկվում է զանազան նպատակներով օգտագործելու համար, ասենք, որպես ալպինիստի վերմակ, որը ծալելիս մի բռունցքի չափ է դառնում, ջրաման, վրան և այլն։ Իսկ նման գործվածք ստանալու համար հարկ եղավ հնարել շատ նուրբ աշխատանքի ընդունակ հինող հաստոցներ։ Տիեզերանավում հաստատուն ջերմություն ապահովող նյութերն այժմ կիրառվում են նաև սառնարանների, բնակարանային շինարարության, սպորտային նավակների ու ավտոմեքենաների արտադրության մեջ։ Բորի բյուրեղներից կազմված նյութը, որը ալյումինից կրկնակի անգամ դիմացկուն է և մեկ քա-







ոորդով թեթև, թափանցիկ ու ճկուն, ժամանակին կփոխարինի սովորական ապակուն: Տիեզերական տեխնիկայի ստեղծման ճանապարհին միանգամից հարստացավ մինչ այդ մարդու ձեռքի տակ եղած շինանյութերի գանձարանը: 3—4 հազար տարվա ընթացքում մարդը օգտագործել է բնության տարրերից մոտ 20-ը, իսկ այժմ հնարավոր դարձավ որպես տեխնիկական մետաղ կամ օժանդակ նյութ օգտագործել գազերից բացի բոլոր քիմիական տարրերը:

Մարդու ուղևորությունը դեպի տիեզերք պահանջում էր տիեզերանավում ստեղծել մոտավորապես այնպիսի պայմաններ, ինչպիսիք կան Երկրի վրա (օդ, սնունդ, աշխատելու հնարավորություն, քուն և այլն): Բացի դա, պետք էր ստեղծել սարքեր, որոնք կարողանային Երկրից հետևել տիեզերագնացի առողջության վիճակին: Որոնումների արդյունքը եղավ այն, որ նախ՝ ստեղծվեց մի նոր գիտություն՝ տիեզերական կենսաբանությունը, որն ուսումնասիրում է կենդանի օրգանիզմի վիճակը անկշռելիության պայմաններում, և ապա՝ այդ նպատակով ստեղծված տեխնիկան կիրառություն գտավ բժշկության մեջ: Հաշվիչ մեքենան մուտք գործեց նաև բժշկի առանձնասենյակը ու դարձավ նրա իմաստուն օգնականը, խորհրդատուն: Իսկ տիեզերանավի սարքերից շատ-շատերը տեղ գտան հիվանդանոցներում՝ ախտորոշման, բուժման և այլ նպատակներով: Սկսենք հենց տիեզերագնացի գլխարկից. այժմ դրա միջոցով ստուգում են երեխաների շնչառական օրգանները և կատարում համապատասխան բուժում: Տիեզերագնացի համար պատրաստված այն սարքը, որը միայն աչքերի շարժումով միացնում ու անջատում է ինչ-որ մեխանիզմներ (երբ ձեռքերն ու ոտքերը զբաղված են), այժմ հաշմանդամ մարդը կարող է օգտագործել՝ միացնելու համար ռադիոն, լույսը, հեռախոսի համարը հավաքել, գիրքը թերթել և այլն: Տիեզերագնացին Երկրից հետևելու սարքը օգտագործելով, բժիշկը կարող է իր առանձնասենյակից (30—35 մ. հեռավորությունից) հետևել հիվանդի սրտի աշխատանքին, կարող է հեռախոսով (առանց լարի) լսել հիվանդի սրտի զարկերը, իմանալ արյան ճնշման չափը, իսկ լազերային ճառագայթներով վիրահատություն կատարել՝ առանց դանակի, առանց ցավի և երբեմն էլ՝ առանց արյունահոսության:

Տիեզերագնացության տեխնիկայի զարգացման ընթացքում հայտնաբերվում են էներգիայի նորանոր աղբյուրներ, որոնք հետագայում շատ մեծ դեր կխաղան մեր կյանքի կարիքները բավարարելու գործում: Դրանց օգտագործմամբ հնարավոր կդառնա օդը զերծ պահել թունավոր գազերից, խնայել վառելիքի պաշարները, որոնք անսպառ չեն Երկրի վրա: Արդեն գոյություն ունեն ավտոմեքենայի և տրակտորի առաջին նմուշները, որոնք աշխատում են ածխաջրածնի և օդի միջոցով, կան էլեկտրաավտոմեքենաներ: Տիեզերանավերից շատերի համար որպես էլեկտրաէներգիայի հիմնական աղբյուր ծառայել է արևային էլեմենտը: Էներգիայի այդ աղբյուրը այժմ կիրառվում է արդյունաբերության և կապի տեխնիկայում: Հատկապես հարավային երկրներում էներգիայի այդ տեսակը անսպառ հնարավորություններ ու հեռանկարներ ունի: Այժմ արտադրվում են ճապոնական տրանզիստորային ռադիոընդունիչներ, որտեղ սովորական մարտկոցը փոխարինված է արևային փոքրիկ էլեմենտով: Արդեն փորձարկված է էներգիայի այնպիսի մի աղբյուր, որը հնարավոր է օգտագործել կենդանի օրգանիզմի մեջ եղած էլեկտրահոսանքով: Սրտամկանի անբավարարություն ունեցող մարդը հետագայում այլևս կարիք չի ունենա էներգիայի արտաքին աղբյուրի. փոքրիկ սարքը, որը կզետեղվի հիվանդի մարմնի մեջ, կսնվի նրա բնական էլեկտրահոսանքով:

Իսկ ի՞նչ տվեց տիեզերական տեխնիկան էլեկտրոնային հաշվիչ մեքենաներին: Բանն այն է, որ առանց այդ մեքենաների անհնար էր իրականացնել տիեզերական թռիչքները, բայց և հենց այդ մեքենաներն իրենք տիեզերքի նվաճման աշխատանքների ընթացքում զարգացման արագ, թռիչքաձև ճանապարհ անցան: Խնդիր դրվեց ստեղծել շատ փոքր հաշվիչ մեքենաներ, ընդհուպ մինչև ոսպի հատիկի մեծության: Միայն հաշվիչ մեքենաների շնորհիվ հնարավոր դարձավ տիեզերանավի կառավարումը Երկրից: Իսկ այժմ այդ նույն գյուտերը կարող են օգտագործվել ինքնաթիռների, ավտոմեքենաների, հաստոցների վրա, բժշկության մեջ: Այսօր, երբ այնքան մեծ նշանակություն է տրվում ավտոմատ կառավարվող հաստոցներին, չպետք է մոռանալ, որ դրանք էլ արդյունքն են տիեզերական տեխնիկայի:

Դժվար է մեկ առ մեկ թվարկել այն բոլորը, ինչ ստանում է Երկրի վրա ապրող մարդը տիեզերական տեխնիկայից: Առայժմ բավարարվենք այսքանով:



*Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ*



ԵՐԵՔ ԵՐԱԺԻՇՏՆԵՐ

# ՖԵՐՆԱՆ ԼԵԺԵ

*(1881—1955)*

*Ֆերնան Լեժեն ֆրանսիացի նկարիչ է, ասպարեզ է իջել 20-րդ դարի առաջին կեսին: Նա իր ամբողջ կյանքում եղել է հակաֆաշիստ, 1945 թվականին մտել է ֆրանսիական կոմունիստական կուսակցության շարքերը:*

*Լեժեն եղել է Վլադիմիր Մայակովսկու մտերիմ բարեկամը: Մայակովսկին 1923 թվականին իր ֆրանսիական ակնարկներում ասում է, որ Լեժեն իր վրա թողել է շատ մեծ և շատ հաճելի տպավորություն, որ նա արվեստը համարում է ոչ թե սատծու պարգև, այլ հետաքրքիր և մարդկությանը անհրաժեշտ գործունեության ասպարեզ, ինչպես մնացած բոլոր ասպարեզները: Լեժեն համակրանքով էր վերաբերվում Հոկտեմբերյան հեղափոխությանը:*

*Լեժեն երազում էր արվեստը դարձնել ժողովրդի սեփականություն: Երազում էր դուրս բերել այն թանգարանների պատերից: Նա աշխատում էր արվեստը կապել մարդու կյանքի և կենցաղի հետ: Այդ է պատճառը, որ Ֆերնան Լեժեի ստեղծագործական մոտեցման ձևերը որոշ ազդեցություն են թողել և դեռ թողնում են մոնումենտալ և կիրառական արվեստի վրա:*


Լույս է տեսնում 1923 թվականից



**ՊԻՈՆԵՐ**

№ 2 փետրվար 1971 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*
*Նկ. ՌՈԲԵՐՏ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ*


Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԵԼԻՔՅԱՆ Ս., ՍԻՄՈՆՅԱՆ Կ. (գլխ. խմբագրի տեղակալ), ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

**«Пионер»** на армянском языке. Адрес редакции:
Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

*Հասցեն՝ Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15, Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96։*

ՎՖ 05009: Պատվեր՝ 8: Տպաքանակ՝ 72100: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 8 II 1971 թ.: ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91:

Գինը՝ 10 կ.






Իմ պապը, ԽԻՑՈՒՐԱՆԻ Մ.
Թբիլիսի, 14 տ.



Ծերունի, ԱՄԻՐԱՆ Ց.
Թբիլիսի, 13 տ.

# ՆԿԱՐՈՒՄ ԵՆ ՎՐԱՑ ԵՐԵԽԱՆԵՐԸ



Ա. Ծերեթելիի պատմվածքի ձևավորումը
ԼԱՄԱՐՃԵՎԻԼԻ Լ.
Թբիլիսի, 11 տ.